Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 21 ՆՈՅԵՄԲԵՐ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ,
II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։

---

НЮԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԵՎ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 38 ՏԱՐԻՆ

38 տարի առաջ, 1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանի բանվորներն ու գյուղացիները, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ, տապալեցին հայ ժողովրդի ոխերիմ թշնամի, արևմտյան իմպերիալիստների գործակալ դաշնակների տիրապետությունը և հաստատեցին Սովետական իշխանություն։ Հայաստանի վրա մեկընդմիշտ ծածանվեց Մեծ Հոկտեմբերի ազատարար կարմիր դրոշը։

Կատարվեց բազմաչարչար հայ ժողովրդի դարավոր երազանքը։ Սովետական կարգերի հաղթանակի շնորհիվ նա ընդմիշտ ազատագրվեց սոցիալական և ազգային ճնշումից, ձեռք բերեց ազատություն և խաղաղություն, ստացավ ազգային վերածնության հնարավորություն, ստեղծեց







իր պետականությունը։ Հայ ժողովուրդը Սովետական Միության մյուս ժողովուրդների հետ միասին թևակոխեց նոր, սոցիալիզմի կառուցման դարաշրջանը։

Պրոլետարիատի մեծ առաջնորդ, սոցիալիստական առաջին պետության հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինը ջերմորեն ողջունեց իմպերիալիստական ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին։

Հայաստանում Սովետական իշխանության հաստատումը հնարավոր եղավ միմիայն Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ։ Սովետական Հայաստանը Մեծ Հոկտեմբերի ծնունդն է։

Սովետական Հայաստանը ծանր ժառանգություն ստացավ անցյալից։ Ցարիզմի վարած գաղութային դաժան քաղաքականության հետևանքով Հայաստանը մնում էր որպես ցարական Ռուսաստանի հետամնաց ծայրամասերից մեկը, իսկ դաշնակների անփառունակ տիրապետության օրով հայ ժողովուրդն ապրեց իր բազմադարյան պատմության ամենամռայլ շրջանը։ Դաշնակների տիրապետության տարիներին Հայաստանում



տիրում էր սովը, աղքատությունը, վայրենի կամայականությունը։

Հայաստանի Կոմունիստական պարտիան և նորաստեղծ Սովետական կառավարությունը հրկիզված քաղաքների և գյուղերի փլատակների վրա ստեղծեցին նոր կյանք, և ռեսպուբլիկան բռնեց ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման ուղին։

Այդ վիթխարի աշխատանքը հնարավոր եղավ կատարել միմիայն Սովետական Ռուսաստանի և մյուս սոցիալիստական ռեսպուբլիկաների եղբայրական օգնությամբ։

Երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման և սոցիալիզմի հաջող կառուցման համար հսկայական նշանակություն ունեցավ Լենինի Կովկասի կոմունիստներին 1921 թվականի ապրիլին ուղղված դիրեկտիվ-նամակը։ Այդ նամակում ամենայն հստակությամբ շարադրված էին Կովկասի կոմունիստների և ամբողջ աշխատավորության խնդիրները սոցիալիզմի շինարարության գործում։ Հանճարեղ առաջնորդը խնդիր է դնում անմիջապես ձեռնամուխ լինել երկրի էլեկտրիֆիկացմանը և ոռոգման սիստեմի ստեղծմանը, որը «ամենից ավելի է պետք և ամենից ավելի կվե-

խաստեղծի երկիրը, կվերածնի նրան, կթաղի անցյալը, կամրապնդի անցումը դեպի սոցիալիզմ»։

Կովկասի եղբայրական մյուս ժողովուրդների հետ միասին հայ ժողովուրդը հաջողությամբ կենսագործեց առաջնորդի այդ պատգամները։

1920 թվականի վերջին և 1921 թվականի ընթացքում, ՌՍՖՍՌ-ի եղբայրական օգնությամբ, Հայաստանում ժողովրդական տնտեսությունը վերականգնելու և սոցիալիզմի տնտեսական հիմքը կառուցելու գործում մի շարք արմատական միջոցառումներ ձեռնարկվեցին։ 1920 թվականի վերջերին ՌՍՖՍՌ-ի կառավարությունը Վ. Ի. Լենինի նախագահությամբ որոշում ընդունեց Հայաստանին տալ 3 միլիարդ ռուբլի (600.000 ռուբլի ոսկով)։ 1922 թվականին Աշխատանքի և Պաշտպանության Խորհուրդը Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ քննարկեց Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսությունը վերականգնելու հարցը և որոշեց այդ նպատակի համար հատկացնել ևս 1,5 միլիոն ռուբլի ոսկով։ Սովետական Ռուսաստանը Հայաստան ուղարկեց մեծ քանակությամբ արդյունաբերական ապրանքներ և պարենամթերք։ Սովետական



Հայաստանին անգնահատելի օգնություն ցույց տվեցին Մոսկվայի, Լենինգրադի և Իվանովո-Վոզնեսենսկի բանվորները։ Այսպես, Լենինգրադի «Պրոմետ» գործարանի բանվորները Երևանի ձուլարան-մեխանիկական գործարանին տվեցին մետաղահատ հաստոցներ և օգնեցին դրանք տեղադրելու և յուրացնելու գործում։ Իվանովո-Վոզնեսենսկի բանվորները Սովետական Հայաստանին նվեր ուղարկեցին 180 հազար իլիկ և 850 մանածագործական հաստոց, որոնց հիման վրա կազմակերպվեց Լենինականի տեքստիլ գործարանը՝ Հայաստանի տեքստիլ արդյունաբերության առաջնեկը։

Սովետական իշխանության 38 տարիների ընթացքում աննախընթաց վերելք ապրեցին Սովետական Հայաստանի էկոնոմիկան ու կուլտուրան։

Ցարական Ռուսաստանի հետամնաց ծայրամասը հանդիսացող Հայաստանը Սովետական իշխանության տարիներին դարձավ բարձր զարգացած արդյունաբերության և սոցիալիստական գյուղատնտեսության, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի երկիր։ Ռեսպուբլիկայում ստեղծվեցին և բուռն կերպով զարգացան ժամանակակից արդյու-

նաբերության այնպիսի ճյուղեր, ինչպես քիմիական, մեքենաշինական, լեռնահանքային, գունավոր մետալուրգիայի, էներգետիկ, շինանյութերի, էլեկտրասարքերի, ճշգրիտ գործիքների, հաշվիչ մեքենաների, տեքստիլ, տրիկոտաժի, սննդի արտադրության և շատ այլ ճյուղեր։ Ռեսպուբլիկայում կառուցվեցին արդյունաբերական այնպիսի խոշոր ձեռնարկություններ, ինչպիսիք են՝ Երևանի Ս. Մ. Կիրովի անվան, էլեկտրամեքենաշինական, էլեկտրալամպերի, Կաբելի, Ավտոդողերի, Պոլիվինիլացետատ գործարանները, ԿԱՆԱԶ-ը, Քաջարանի պղնձի-մոլիբդենի, Կիրովականի Քիմիական, Լենինականի Տեքստիլ կոմբինատները, Երևանի, Սևանի, Գյումուշի, Քանաքեռի հիդրոէլեկտրակայանները։ Այժմ ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները երկրին տալիս են պղինձ, ալյումին, մետաղահատ հաստոցներ, գեներատորներ, կոմպրեսորներ, տրանսֆորմատորներ, շարժական էլեկտրակայաններ, հիդրոտուրբիններ, էլեկտրաճշգրիտ գործիքներ, ժամացույցներ, էլեկտրալամպեր, ավտոմոբիլային և տրակտորային պահեստամասեր, ավտոդողեր, կարբիդ, ցեմենտ, քի-



միական պարարտանյութեր, հրակայուն աղյուս և այլն։

Հայաստանի արդյունաբերության արտադրանքի 100-ից ավելի տեսակներ ուղարկվում են ՍՍՌՄ-ի շատ ռեսպուբլիկաներ ու մարզեր, ինչպես նաև արտասահմանյան 25 երկրներ։ Արտասահման են արտահանվում տրանսֆորմատորներ, գեներատորներ, շարժական էլեկտրակայաններ, էլեկտրասարքեր, սեղանի ժամացույցներ, կոնյակ, գինի, ծխախոտ, գորգեր և այլն։

Ներկայումս Հայաստանում կա ավելի քան 500 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն։ Արդյունաբերական արտադրանքի ծավալը ռեսպուբլիկայում 1913 թվականի համեմատությամբ աճել է մոտ 50 անգամ, ընդ որում խոշոր արդյունաբերության գծով՝ 136 անգամ։

Առանձնապես մեծ հաջողություններ են ձեռք բերվել երկրի էլեկտրիֆիկացման վերաբերյալ Վ. Ի. Լենինի պատգամները կենսագործելու ուղղությամբ։ 1956 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, էլեկտրաէներգիայի արտադրությունը աճեց 450 անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 4,5 անգամ։ Բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտա-

դրությամբ Հայաստանն առաջ է անցել Անգլիայից, Ֆրանսիայից, Հոլանդիայից, Իտալիայից ու Ճապոնիայից։ Ներկայումս Հայաստանը երկու անգամ ավելի էլեկտրաէներգիա է արտադրում, քան Թուրքիան, թեև Թուրքիայի տերիտորիան Հայաստանից մեծ է 25 անգամ։

Ծանր արդյունաբերության զարգացման հիման վրա անշեղորեն աճում է թեթև և սննդի արդյունաբերության արտադրանքը։ 1956 թվականին տեքստիլ արդյունաբերության արտադրանքը, 1913 թվականի համեմատությամբ, ավելացավ 66 անգամ, սննդարդյունաբերությանը՝ 18 անգամ։ Ռեսպուբլիկայում արտադրվում են ժողովրդական սպառման ավելի քան 400 տեսակի ապրանքներ։

Սովետական իշխանության տարիներին անչափ աճել են բանվոր դասակարգն ու տեխնիկական ինտելիգենցիան։ Ներկայումս արդյունաբերության մեջ աշխատում են 330 հազար բանվորներ ու ծառայողներ, այդ թվում 8.800 ինժեներա-տեխնիկական աշխատողներ։

Շնորհիվ գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման արմատապես փոխվել է հայ գյուղի դեմքը։ Կոլտնտեսա-



յին կարգը լավագույն պայմաններ է ստեղծել գյուղատնտեսության բոլոր ճյուղերի սիստեմատիկ վերելքի, գյուղի աշխատավորների նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման համար։

Ներկայումս ռեսպուբլիկայում կա 863 կոլտնտեսություն և 55 սովխոզ, 9 տեխնիկական վերանորոգման կայան և 29 ՄՏԿ։ Գյուղատնտեսության մեջ լայնորեն կիրառվում են ժամանակակից տեխնիկան և գիտության նվաճումները, բարձրանում է տնտեսությունը վարելու կուլտուրան, ավելանում է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Կոլտնտեսությունների և սովխոզների դաշտերում աշխատում են ավելի քան 5.000 տրակտոր, մեծ թվով կոմբայններ և այլ մեքենաներ։ Կոլտնտեսությունների 83 տոկոսը էլեկտրիֆիկացված է։ Ռեսպուբլիկայում ոռոգման նոր սիստեմների կառուցման շնորհիվ ոռոգելի տարածությունը հասել է 213,5 հազար հեկտարի՝ 1913 թվականի 97 հազար հեկտարի դիմաց։

Մեծ չափով ընդարձակվել են խաղողի և պտղատու այգիների տարածությունը։ Եթե 1913 թվականին Հայաստանում կային

9,2 հազար հեկտար խաղողի և 4,4 հազար հեկտար պտղատու այգիներ, ապա 1958 թվականին խաղողի այգիների տարածությունը կազմում է 21.123 հեկտար, իսկ պտղատու այգիներինը՝ 18.728 հեկտար։

Կենսագործելով պարտիայի ու կառավարության որոշումները, Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության աշխատողները վերջին տարիների ընթացքում զգալիորեն ավելացրել են գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

Հինգերորդ հնգամյակի ընթացքում բամբակի համախառն բերքը ավելացավ 47 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 50, ծխախոտինը՝ 54, բանջարեղենինը՝ 78 և խաղողինը՝ 29 տոկոսով։ Զգալիորեն ավելացել է անասունների գլխաքանակը, ինչպես նաև անասնաբուծական հիմնական մթերքների արտադրությունը։ Կովերի գլխաքանակն աճեց 36 տոկոսով, խոզերինը՝ 62 տոկոսով, ոչխարներինը՝ 47 տոկոսով։ 1957 թվականին ռեսպուբլիկայում կաթի արտադրությունն ամբողջությամբ վերցրած ավելացել է 11 տոկոսով, բրդինը՝ 10, ձվինը՝ 2։ Մեկ ֆուրաժային կովի միջին կաթնատվությունը կոլտնտեսություններում



կազմել է 1.342 կիլոգրամ, սովխոզներում՝ 1.973 կիլոգրամ։

Նույն ժամանակամիջոցում 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրվել է 22 ցենտներ միս (սպանդանոցային քաշով), 193 ցենտներ կաթ, 229 կիլոգրամ բուրդ, իսկ հացահատիկային կուլտուրաների 100 հեկտարի դիմաց՝ 34 հազար ձու։

Ռեսպուբլիկայում մսի մթերումների և գնումների պլանը նույն թվականին կատարվել է 102, իսկ բրդինը՝ 121 տոկոսով։ 1957 թվականին կոլտնտեսություններում արտադրվեց միս՝ 28 հազար 100 տոննա, կաթ՝ 146 հազար 200 տոննա, բուրդ՝ 2 հազար 551 տոննա, իսկ մինչև այս տարվա հոկտեմբեր ամիսը կոլտնտեսություններում արտադրվել է 122 հազար 499 տոննա կաթ, 2 հազար 418 տոննա բուրդ, 22 հազար 287 տոննա միս և այլն։

Կենսագործելով ՍՄԿԿ XX համագումարի պատմական որոշումները, մեր ռեսպուբլիկայի աշխատավորները հասան էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա վերելքի։ Արդյունաբերության համախառն արտադրանքի արտադրության 1957 թվականի պլանը կատարվեց 102 տոկոսով։ 1957 թվականին ռեսպուբլիկայի ամբողջ (ար-

դյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1956 թվականի համեմատությամբ աճեց 10 տոկոսով, իսկ 1913 թվականի մակարդակը գերազանցեց 50 անգամ։

1957 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ավտոդողերի թողարկումն ավելացավ 71 տոկոսով, էլեկտրաշարժիչներինը՝ 73, ուժային տրանսֆորմատորներինը՝ 50, կենտրոնախույս պոմպերինը՝ 77, ավտոմոբիլային պահեստամասերինը՝ 80, հաղորդալարերինը՝ 45, մոլիբդենի կոնցենտրատինը՝ 39 տոկոսով։ Նույն ժամանակաշրջանում կաշվե-կոշիկի արտադրությունը ավելացել է 30 տոկոսով, տրիկոտաժինը՝ 15, մետաքսե գործվածքեղենինը՝ 24, կահույքինը՝ 20, հրուշակեղենինը՝ 37, պահածոներինը՝ 32 և պանրինը՝ 24 տոկոսով։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման շնորհիվ կատարվեց 40 միլիոն ռուբլու արտապլանային խնայողություն։

Անցյալ տարի հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը, 1956 թվականի համեմատությամբ, ավելացել է 34, ծխախոտինը՝ 12, շաքարի ճակնդեղինը՝



16, կերի կուլտուրաներինը՝ 26 տոկոսով և այլն։ Այդ բոլոր հաջողությունները ձեռք են բերվել բերքատվության բարձրացման շնորհիվ։

1957 թվականին հացահատիկային կուլտուրաների միջին բերքը, 1956 թվականի համեմատությամբ, բարձրացել է 35 տոկոսով, բամբակինը՝ 10, ծխախոտինը՝ 11, շաքարի ճակնդեղինը՝ 16 տոկոսով և այլն։

Խաղողի այգիներ դնելու պլանը Հայկական ՍՍՌ-ի սովխոզները անցյալ տարի կատարեցին 103 տոկոսով, պտղատու այգիներինը՝ 108 տոկոսով։ Դրված է 4,8 անգամ ավելի խաղողի այգի և 2,6 անգամ ավելի պտղատու այգի, քան 1956 թվականին։

Անցյալ տարի շաքարի ճակնդեղի մթերումների պետական պլանը կատարվեց 108 տոկոսով, բանջարեղենի մթերումների ու գնումների պլանը՝ 108 տոկոսով, հացահատիկային կուլտուրաներինը՝ 118 տոկոսով, մրգինը՝ 132 տոկոսով։

1957 թվականին պետությանը հանձնված է 25 տոկոսով ավելի կարտոֆիլ, 19 տոկոսով ավելի բանջարեղեն ու ծխախոտ և 15 տոկոսով ավելի շաքարի ճակնդեղ, քան

1956 թվականին։ Ավելացան նաև հացահատիկային կուլտուրաների և բամբակի մթերումները։ 1957 թվականին կոլտնտեսությունները կուտակեցին 15 տոկոսով ավելի խոտ, 25 տոկոսով ավելի ծղոտ, սիլոսացրին 37 տոկոսով ավելի կեր, քան 1956 թվականին։

1957 թվականին կոլտնտեսությունները պետությանը հանձնեցին 13.352 տոննա կաթ ավելին, քան 1956 թվականին։ 1957 թվականին մեկ կովի կաթնատվությունը կազմեց 1.342 կգ., որը 92 կիլոգրամով ավել է 1960 թվականի համար սահմանված պլանից։

1957 թվականին տրակտորների պարկը, 1956 թվականի դիմաց, մեծացել է 6 տոկոսով, կոմբայններինը՝ 18 տոկոսով։ Գյուղատնտեսության տեխնիկական զինվածության աճը հնարավորություն ստեղծեց բարձրացնելու գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման մակարդակը։ Ներկայումս կոլտնտեսություններում գրեթե ամբողջովին մեքենայացված են ցելի, ցրտահերկի, բամբակենու ու շաքարի ճակնդեղի ցանքի աշխատանքները։

Ռեսպուբլիկայում պետական ու կոոպե-



րատիվ կազմակերպությունների (բացի կոլտնտեսություններից) կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը կազմել է մոտավորապես 1,3 միլիարդ ռուբլի և 1956 թվականի համեմատությամբ աճել է 25 տոկոսով։

Անցյալ տարի ռեսպուբլիկայում մեծ աշխատանք կատարվեց ոռոգման սիստեմի շինարարության, ճահիճները չորացնելու և խոտհարքները ջրովի դարձնելու ուղղությամբ։ Ջրանցքների և ոռոգիչ սիստեմների շինարարության շնորհիվ ոռոգելի հողերի տարածությունը ավելացել է 3.400 հեկտարով, ջրովի են դարձվել 4.155 հեկտար խոտհարքներ։

Ռեսպուբլիկայում մեծ հաջողություններ ձեռք բերվեցին տրանսպորտի բնագավառում։ Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքը ժողովրդատնտեսական բեռների բեռնման պլանը անցյալ տարի կատարեց 102 տոկոսով։ 1957 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, բոլոր բեռների օրական միջին բեռնումը ավելացավ հինգ տոկոսով։ Ռեսպուբլիկայի Ավտոտրանսպորտի մինիստրության ընդհանուր օգտագործման ավտոտրանսպորտը բեռնաշրջանառության պլանը կատարել է 100,6

տոկոսով, բեռների փոխադրումներինը՝ 105 տոկոսով, ուղևորների փոխադրումների պլանը՝ 109 տոկոսով։

Պարտիայի և կառավարության մի շարք միջոցառումների շնորհիվ 1957 թվականին է՛լ ավելի բարձրացավ աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակը։ Աճեց բնակչության կողմից ապրանքների գնումը պետական և կոոպերատիվ առևտրի ցանցում։ Պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը 1957 թվականին կազմեց 3 միլիարդ 860 միլիոն ռուբլի և 1956 թվականի համեմատությամբ ավելացավ 17 տոկոսով։ Ռեսպուբլիկայի Առևտրի մինիստրության ձեռնարկությունների գծով 1957 թվականի ապրանքաշրջանառության պլանը կատարվեց 110 տոկոսով։

Սովետական Հայաստանի աշխատավորները իրենց ազգային տոնը՝ ռեսպուբլիկայում Սովետական կարգերի հաստատման 38-ամյակը, դիմավորում են ժողովրդական տնտեսության զարգացման ընթացիկ տարվա պլանների հաջող կատարումով։ Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը համախառն արտադրանքի այս տարվա առաջին կիսամյակի պլանը կատարեց 105 տոկոսով



և 1957 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ տվեց 13 տոկոսով ավելի արտադրանք։ Նախորդ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ այս տարվա առաջին կիսամյակում ռեսպուբլիկայի սև մետալուրգիայի արդյունաբերության արտադրանքն աճեց 122 տոկոսով, գունավոր մետալուրգիայինը՝ 113, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 104, մետաղամշակության և մեքենաշինությանը՝ 126, հաստոցաշինությանը և գործիքաշինությանը՝ 193, սարքաշինությանը՝ 133, քիմիական արդյունաբերությանը՝ 123, շինանյութերի արդյունաբերությանը՝ 144, մսինը՝ 141, յուղի-պանրինը՝ 121, շաքարինը՝ 165 տոկոսով և այլն։ Հաջողությամբ կատարվեց ժողովրդական սպառման ապրանքների՝ կաշվե-կոշիկի, մետաքսե, բամբակե և բրդյա գործվածքների, տրիկոտաժեղենի և այլ ապրանքների արտադրության պլանը։ Աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 6 տոկոսով, այդ թվում ժողտնտխորհի արդյունաբերության մեջ՝ 7 տոկոսով։ Երկիրը պլանից դուրս ստացավ զգալի քանակությամբ արդյունաբերական արտադրանք։ Բնակարանային շինարարության մեջ պետական կապիտալ ներդրումնե-

րի ծավալը 1957 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ աճեց 34 տոկոսով։ Կառուցվեց և շահագործման հանձնվեց 60 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, այսինքն՝ 48 տոկոսով ավելի, քան 1957 թվականի առաջին կիսամյակում։

Զգալի հաջողություններ ձեռք բերվեցին գյուղատնտեսության զարգացման ասպարեզում։ Կոլտնտեսությունները գցեցին 66 տոկոսով ավելի խաղողի և 14 տոկոսով ավելի պտղատու այգիներ, քան 1957 թվականի գարնանը, իսկ սովխոզները գցեցին 60 տոկոսով ավելի խաղողի և երեք անգամ ավելի պտղատու այգիներ, քան նախորդ տարվա համապատասխան ժամանակաշրջանում։ 1957 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ ընթացիկ տարվա առաջին կիսամյակում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացավ 6 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 7 տոկոսով, խոզերինը՝ 21 տոկոսով, ոչխարներինը՝ 7 տոկոսով, կաթի արտադրությունը՝ 18 տոկոսով, մսինը՝ 58 տոկոսով, բրդինը՝ 7 տոկոսով։ Պետությանը հանձնվեց և վաճառվեց 53 տոկոսով ավելի միս և 20 տոկո-



սով ավելի կաթ, քան 1957 թվականի առաջին կիսամյակում։

Ընթացիկ տարվա երրորդ եռամսյակի պլանը արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման գծով կատարվեց 101,5 տոկոսով, իսկ անցած ինն ամսվա պլանը կատարվեց 104 տոկոսով, արդյունաբերական արտադրանքի ծավալը անցյալ տարվա ինն ամիսների համեմատությամբ մեծացավ 12 տոկոսով։ 1957 թվականի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ ընթացիկ տարվա ինն ամսում արտադրվել է 4.029 հատով ավելի՝ մինչև հարյուր կիլովատանոց գեներատոր, 24.875 հատով ավելի՝ մինչև հարյուր կիլովատանոց էլեկտրաշարժիչ, 2.199 հատով ավելի շարժական էլեկտրակայան, 5.222 հատով ավելի կենտրոնախույս պոմպ, 10.099 հազար պայմանական սալիկով ավելի շիֆեր, 611 հազար զույգով ավելի կաշվե կոշիկ, 5 միլիոն 46 հազար մետրով ավելի գործվածքներ, 694 հազար հատով ավելի սպիտակեղենի ու վերնահագուստի տրիկոտաժ, 7.185 հազար ռուբլով ավելի կահույք, 664 տոննայով ավելի պանիր, 12.427 հազար պայմանական տուփով ավելի պահածո։

Արդյունաբերության մեջ բանվորների աշ-

խատանքի արտադրողականությունը այս տարվա ինն ամսում, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճեց 5,6 տոկոսով, այդ թվում ժողտնտխորհի ձեռնարկություններում՝ 7,1 տոկոսով։

Մեծ չափերով աճել են ռեսպուբլիկայի կապիտալ ներդրումները, որոնք ընթացիկ տարում կհասնեն մեկ միլիարդ 151 միլիոն ռուբլու։ Ընթացիկ տարում փորձարկվել են Գյումուշգէս-Քաջարան բարձրավոլտ էլեկտրահաղորդման գիծը, Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանը, Երևանի էլեկտրալամպերի գործարանի ապակու և գազագեներատորային ցեխերը, Լենինականի էլեկտրատեխնիկական գործարանը, Կոտայքի ջրանցքի առաջին հերթը, Արզնի-Շամիրամ ջրանցքի առաջին հերթը և այլն։ Միաժամանակ կառուցվում են Ագարակի պղնձամոլիբդենային, Կիրովականի արհեստական մետաքսի կոմբինատները, Երևանի ռելեի, երկաթ-բետոնե կոնստրուկցիաների գործարանները, Աթարբեկյանի, Երևանի հիդրոէլեկտրակայանները և մի շարք այլ ձեռնարկություններ։

Ռեսպուբլիկայում լայն ծավալ է ստացել հատկապես բնակարանային շինարարու-



թյունը։ Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը մշակել են ու հաստատակամորեն իրականացնում են բնակարանային շինարարության մեծ ծրագիրը, որով խնդիր է դրվում 10—12 տարում վերացնել բնակարանային պակասը։ Միայն 1956—1957 թվականներին պետական հիմնարկների ու ձեռնարկությունների միջոցով կառուցվել ու շահագործման է հանձնվել 238 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Նույն ժամանակաշրջանում պետական վարկի օգնությամբ բանվորներն ու ծառայողները կառուցել են 250 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, իսկ կոլտնտեսականները կառուցել են 17·100 բնակարան։ Այս տարվա պլանում որոշված է բնակարանային շինարարությանը հատկացնել 263 միլիոն ռուբլի, որը 78 միլիոն ռուբլով ավելի է 1957 թվականի համեմատությամբ։ Աշխատավորները պետք է ստանան 193 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, իսկ անհատական կարգով կըկառուցվի 170 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

Հատկապես լայն թափ է ստացել բնակարանային շինարարությունը Երևանում, որը դարձել է մեր մեծ Միության առաջավոր ու

գեղեցիկ քաղաքներից մեկը, Սովետական Հայաստանի զարգացող արդյունաբերության, ծաղկող գիտության ու կուլտուրայի խոշոր կենտրոնը։ 1956—1957 թվականներին Երևանում շահագործման հանձնվեց ավելի քան 120 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, այսինքն ավելի շատ, քան նախորդ հինգ տարում, իսկ առաջիկա երեք տարում քաղաքում կկառուցվի 407 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, որը բնակարանով կապահովի ևս 13 հազար ընտանիք։

Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը նոր որոշում ընդունեցին բնակարանային շինարարության, ինչպես նաև դպրոցների, հիվանդանոցների ու մանկական հիմնարկների ցանցի զարգացման համար լրացուցիչ միջոցներ մոբիլիզացնելու նպատակով վարչական, սպորտային և մյուս հասարակական շենքերի ու կառուցվածքների շինարարության համար հատկացվող դրամական միջոցների ու նյութական ռեսուրսների ծախսումը կանոնավորելու մասին։ Մեր երկրի աշխատավորները մեծ գոհունակությամբ ընդունեցին այդ որոշումը, որը վկայում է ժողովրդի բարեկեցությունը բարձրացնելու նկատմամբ պարտիայի և



կառավարության անսահման հոգատարության մասին։

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը անհրաժեշտ համարեցին վերանայել կառուցվող և նախատեսվող վարչական ու հասարակական շենքերի և կառուցվածքների ցանցը այն հաշվով, որպեսզի դադարեցվի ու նոր չսկսվի այնպիսի օբյեկտների շինարարություն, առանց որոնց մոտակա տարիներս կարելի է յոլա գնալ։ Ազատվող միջոցները, նյութերը, սարքավորումը և աշխատուժը պետք է օգտագործվեն բնակելի տների, դպրոցների, հիվանդանոցների և մանկական հիմնարկների կառուցման համար։ Այդ որոշումը նախատեսում է նաև կառուցվող առանձին վարչական ու հասարակական շենքեր հարմարեցնել բնակարանների, դպրոցների, հիվանդանոցների ու մանկական հիմնարկների համար։ Անտարակուսելի է, որ պարտիայի ու կառավարության այս նոր միջոցառումը է՛լ ավելի կարագացնի երկրում մոտակա տարիներին բնակարանային պակասի վերացումը։

Հայ ժողովուրդը մեծ գոհունակությամբ ընդունեց ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը Սովետական Միությունում գազի արդյունաբերության

հետագա զարգացման մասին։ Այդ որոշումով նախատեսվում է Հայաստանի քաղաքների և արդյունաբերական ձեռնարկությունների գազիֆիկացման համար կառուցել Աղստաֆա—Երևան գազամուղը։ Դա ռեսպուբլիկայի արտադրողական ուժերի նոր հզոր վերելքի, աշխատավորների կուլտ-կենցաղային պայմանների բարելավման ու նրանց կենսամակարդակի բարձրացման մեծ ռեզերվ է և ժողովրդա-տնտեսական կարևոր նշանակություն ունի։

Զարգանում է ռեսպուբլիկայի երկաթուղային տրանսպորտը։ Ընթացիկ տարվա յոթ ամսում ռեսպուբլիկայի երկաթուղային տրանսպորտը ժողովրդա-տնտեսական բեռների և ժողովրդական սպառման ապրանքների բեռնման ընդհանուր պլանը կատարել է 103,2 տոկոսով, բեռնաթափման պլանը՝ 101 տոկոսով, տեխնիկական արագությունը՝ 103,2 տոկոսով։ 1957 թվականին շինարարները տարան ևս մի խոշոր աշխատանքային հաղթանակ՝ շարք մտավ Երևան—Ախտա երկաթուղին՝ 60 կիլոմետր երկարությամբ։ Այս նոր երկաթուղին ունի տնտեսական մեծ նշանակություն։ Ներկայումս եռանդուն աշխատանք է ծավալվում Ախտա—Սևան երկաթուղու կառուցման ուղղությամբ,



որը պետք է ավարտվի այս տարվա վերջին։ Դրանով ռեսպուբլիկայի մայրաքաղաքը երկաթուղով կկապվի գեղատեսիլ Սևանա լճի հետ։

Անցյալ տարին նշանավորվեց նաև Սովետական Հայաստանի կուլտուրայի, արվեստի և գրականության նոր վերելքով։ ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները, ընկ. Ն. Ս. Խրուշչովի հայտնի ելույթը՝ «Ժողովրդի կյանքի հետ գրականության և արվեստի սերտ կապի համար», մեծ դեր խաղացին մեր գրականության և արվեստի հետագա զարգացման գործում։ Ռեսպուբլիկայի գրողները, դրամատուրգներն ու բանաստեղծները անցած տարում ստեղծեցին սովետական մարդկանց կյանքը ճշմարտացիորեն արտացոլող մի շարք նոր գործեր։

Շուտով տեղի կունենա Հայաստանի գրողների 4-րդ համագումարը, որը հանրագումարի կբերի նրանց գործունեությունը, նոր խնդիրներ կդնի սովետահայ գրողների առջև։

Նշանակալից են սովետահայ կոմպոզիտորների հաջողությունները։ Անցած տարում սովետահայ կոմպոզիտորների ստեղծագործություններից հատկապես աչքի ընկան Վ. Տիգրանյանի «Սոս և Վարդիթեր» և

Ա. Բաբաևի «Արծվաբերդ» օպերաները, էդ. Հովհաննիսյանի «Մարմար» և Է. Արամյանի «Սոնա» բալետները, որոնք հաջողությամբ բեմադրվեցին Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի ակադեմիական պետական թատրոնում և սիրով ընդունվեցին հասարակայնության կողմից։

Ստեղծագործական բուռն կյանք ապրեց Գ. Սունդուկյանի անվան դրամատիկական թատրոնը, որը մեկը մյուսի հետևից բեմ հանեց ժամանակակից թեմաներով գրված պիեսներ։

Այս տարվա մայիսին կազմակերպվեց Անդրկովկասյան ժողովուրդների առաջին երաժշտական գարունը, որը վերածվեց վրաց, ադրբեջանական և հայ ժողովուրդների եղբայրական բարեկամության իսկական տոնի։

Երևանի և ամբողջ ռեսպուբլիկայի կյանքում, անտարակույս, քաղաքական և կուլտուրական հսկայական իրադարձություն հանդիսացան ՍՍՌՄ Մեծ թատրոնի ելույթները Երևանում։

Բարձր գնահատականի արժանացան մեր ռեսպուբլիկայի կերպարվեստագետները, որոնք ըստ արժանվույն դիմավորեցին Մեծ Հոկտեմբերի 40-ամյակը և մեր կերպարվես-



տը պատվով ներկայացրին համամիութենական ցուցահանդեսում։

Ստեղծագործական աշխուժություն ապրեց «Հայֆիլմ» կինոստուդիան։ Անցյալ տարում թողարկվեցին «Մոր սիրտը», «Ո՞ւմ է ժպտում կյանքը», «Կամո», «Առաջին սիրո երգը» գեղարվեստական ֆիլմերը և «Սովետական Հայաստան» կարճամետրաժ ֆիլմը։ Դրանցից լավագույնները ցուցադրվեցին միութենական էկրաններում և արտասահմանյան երկրներում։

Նշանակալից երևույթ էր անցյալ տարի կազմակերպված երիտասարդության ռեսպուբլիկական ֆեստիվալը, որը նոր թափ հաղորդեց ժողովրդական ինքնագործունեության ծավալմանը։ Ռեսպուբլիկայի երիտասարդ արվեստագետները մեծ հաջողությամբ հանդես եկան համամիութենական և համաշխարհային երիտասարդության և ուսանողության ֆեստիվալներում, նվաճելով 7 ոսկե, 11 արծաթե, 8 բրոնզե մեդալ։ Անցյալ տարվա հոկտեմբեր-նոյեմբեր ամիսներին ռեսպուբլիկայի գրեթե բոլոր քաղաքներում ու շրջաններում կազմակերպվեցին երգի տոներ։

Աննախընթաց աճում է մեր ռեսպուբլիկայի դպրոցների ու կուլտուր-լուսավորական

հիմնարկների ցանցը։ Այժմ ռեսպուբլիկայում գործում են 1.197 դպրոց, որտեղ սովորում են 274 հազար երեխաներ, կամ 15 անգամ ավելի, քան 1914 թվականին։ Դպրոցներում աշխատում են 18 հազարից ավելի ուսուցիչներ։ Ռեսպուբլիկայում գործում են 12 բուհեր, որտեղ սովորում են 21 հազարից ավելի ուսանողներ։

Ռեսպուբլիկայում գործում են 11 թատրոն և պետական կրկես, 231 ստացիոնար կինոթատրոն, 119 շրջիկ կինոսարքավորում, 30 ստացիոնար կինոսարքավորում, որոնք գտնվում են արհմիությունների և մյուս կազմակերպությունների տրամադրության տակ։ 1957 թվականին կինոթատրոններն ընդգրկել են մոտ 14 միլիոն հանդիսատես, 1953 թվականի 5,5 միլիոնի դիմաց։ Ներկայումս ռեսպուբլիկայում կա 2.140-ից ավելի գրադարան՝ 9 միլիոն օրինակ գրքի ֆոնդով, կուլտուրայի 52 տուն, գյուղական 944, քաղաքային 12, կոլտնտեսային 52, դերատեսչական 36 և արհմիութենական 53 ակումբ, ընդամենը՝ 1.137 ակումբ։

Աննախընթաց կերպով աճել է մեր ռեսպուբլիկայի մամուլը։ Ներկայումս հրատարակվում են ավելի քան 100 անուն ռեսպուբլիկական, քաղաքային, շրջանային ու բազ-



մատիրաժ թերթեր, տեսական-քաղաքական, տնտեսագիտական, գրական-գեղարվեստական և այլ հանդեսներ ու պարբերականներ, որոնց միանվագ տպաքանակը կազմում է մի քանի հարյուր հազար օրինակ։ Զգալիորեն աճել է ռեսպուբլիկայի պոլիգրաֆ արդյունաբերությունը, մեծացել է նրա արտադրական կարողությունը, աճել են բանվորների ու վարպետների նոր կադրեր։

Եթե 1913 թվականին Հայաստանում լույս է տեսել ընդամենը 55 անուն գիրք և բրոշյուր, իսկ 1918—1920 թվականներին՝ 46 անուն, ապա միայն 1956 թվականին Սովետական Հայաստանում հրատարակվել է 967 անուն գիրք՝ 6 միլիոն 300 հազար օրինակ ընդհանուր տպաքանակով։ Սովետահայ ընթերցողը մայրենի լեզվով կարդում է մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների երկերը, ռուսական և համաշխարհային գրականության կոթողները։

Նոր հաջողություններ են ձեռք բերել իրենց գիտահետազոտական աշխատանքներում Հայաստանի գիտնականները, որոնցից շատերի անունները հայտնի են ոչ միայն Սովետական Միությունում, այլև ամբողջ աշխարհում։ Ներկայումս Հայաստանում գործում են 59 գիտահետազոտական հիմ-

նարկներ, որոնցում աշխատում են 2.600 գիտական աշխատողներ։

Զգալի հաջողություններ են ձեռք բերվել աշխատավորների բուժսպասարկման բնագավառում։ Լայնորեն ընդարձակվել է բուժպրոֆիլակտիկ և սանիտարական-հիգիենիկ հիմնարկների ցանցը։ Վեցերորդ հնգամյակի անցած երկու տարի և ութ ամսում ռեսպուբլիկայի ստացիոնար բուժհիմնարկներում մահճակալների թիվն ավելացել է 1.545-ով, որոնցից 645-ը՝ նորակառույց հիվանդանոցներում։ Քաղաքներում և քաղաքատիպ ավաններում բացվել են 7, իսկ գյուղերում՝ 17 հիվանդանոցներ։ Վերջին երեք տարում պատրաստվել է 743 բժիշկ, իսկ միջնակարգ բժշկական դպրոցներն են ավարտել 2.918 բուժակ, մանկաբարձուհի, ատամնաբույժ, դեղագործ, և միջին անձնակազմի այլ բուժաշխատողներ։ Ներկայումս մեր ռեսպուբլիկայի բնակչության յուրաքանչյուր 10 հազար մարդուն ընկնում է 118 ուսանող և 22 բժիշկ, իսկ Թուրքիայում համապատասխանաբար՝ 12 և 3, Պակիստանում՝ 8 և 0,7, Իրանում՝ 4 և 1։ Ռեսպուբլիկայի աշխատավորների բարեկեցության սիստեմատիկ բարելավման և առողջապահության զարգացման հետևանքով



մեծացել է բնակչության բնական աճը, իսկ նախառևոլյուցիոն ժամանակաշրջանի համեմատությամբ մահացությունը կրճատվել է մոտ 3 անգամ։ Այժմ ռեսպուբլիկայում գործում են 21 սանատորիա և 8 հանգստյան տուն, որտեղ ամեն տարի բուժվում և հանգստանում են հազարավոր աշխատավորներ։

Լայն կերպով ծավալվում են ֆիզկուլտուրան ու սպորտը։ Ռեսպուբլիկայում գործում են 2.500 ֆիզկուլտուրային կոլեկտիվներ, որոնցում ընդգրկված են 168 հազար մարդ։ Հայաստանի մի շարք սպորտսմեններ համաշխարհային հռչակ են վայելում։

***

Հիրավի մեծ են Սովետական Հայաստանի աշխատավորների նվաճումները ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման գործում։ Սակայն Կոմունիստական պարտիան մեզ միշտ սովորեցնում է չհանգստանալ ձեռք բերածով, միշտ նայել դեպի առաջ, հիմնական ուշադրությունը կենտրոնացնել դեռևս չլուծված խնդիրների վրա, լրիվ կերպով օգտագործել մեր արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ եղած բոլոր ռեզերվներն ու հնարավո-

*թյունները, հասնել նոր, է՛լ ավելի մեծ հաջողությունների։*

*Սովետական ժողովուրդը գնում է դեպի ՍՄԿԿ XXI արտահերթ համագումարը, որը քննարկելու է մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման ներկա էտապի կարևորագույն խնդիրները։ Ամենուրեք հորդում է սովետական մարդկանց ստեղծարար աշխատանքը, ծավալվում է համաժողովրդական սոցիալիստական մրցությունը։ ՍՄԿԿ XXI արտահերթ և ՀԿԿ XX համագումարները արտադրական նոր հաջողություններով են պատրաստվում դիմավորելու նաև մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողները։ Նրանք իրենց ուժերը չեն խնայում, որպեսզի երկրին տան է՛լ ավելի շատ արդյունաբերական ապրանքներ ու գյուղատնտեսական մթերքներ։ Նրանք է՛լ ավելի սերտորեն են համախմբում իրենց շարքերը մեր առաջնորդ և բոլոր հաղթանակների կազմակերպիչ հարազատ Կոմունիստական պարտիայի շուրջը, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը, որը մարքսիզմ-լենինիզմի հաղթական դրոշով մեր երկիրը տանում է դեպի կոմունիզմ։*

---

ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

# ՊԱՏՎՈՎ ԵՆՔ ԿԱՏԱՐՈՒՄ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Էջմիածնի շրջանի Շահումյան գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ ԼԵՎՈՆ ՆԱՎԱՍԱՐԴՅԱՆԻ պատմածը

*Ընթացիկ տարվա դեռ մարտ ամսին մեր կոլտնտեսականները քննության առնելով ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ գյուղատնտեսության աշխատողներին ուղղած դիմումը, ինչպես նաև բամբակագործների համամիութենական խորհրդակցության արդյունքները, պարտավորվեցին յուրաքանչյուր հեկտարից 45 ցենտներ բամբակ ստանալ։ Իսկ անվանի օղակավարուհի, Սոցիալիստական Աշխատանքի հերոս, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Ա. Հարությունյանը, որը 12 աշխատողներով մշակում է 9 հեկտար բամբակենի, պարտավորվեց հեկտարի միջին բերքատվությունը հասցնել 50 ցենտների։*

Մենք, իհարկե, առաջին անգամը չէ, որ այդպիսի բարձր պարտավորություն ենք ստանձնում։ Անցած տարի, օրինակ, պարտավորվել էինք բամբակենու ամեն մի հեկտարից ստանալ 40 ցենտներ բերք, բայց այն հասցրինք 43,3 ցենտների։ Երկարամյա փորձը մեր յուրաքանչյուր բամբակագործին համոզել է, որ բոլոր դեպքերում բարձր բերքի բախտը որոշվում է հողի ու ցանքի լավ մշակությամբ։ Գլխավորը ագրոտեխնիկական կանոնների կիրառումն է, որոնք արդեն մեծ չափերով արմատավորվել են մեր կոլտնտեսությունում։

Ընթացիկ տարում նույնպես բամբակենու ցանքը կատարեցինք խնամքով նախապատրաստված ու պարարտ հողերում։ Չեմ խոսում ցրտահերկի մասին, որն արդեն իր հաստատուն տեղն է գրավում ագրոկոմպլեքսում։ Մեզ մոտ երկար ժամանակ է ինչ առանց ցրտահերկի ոչ մի հեկտարի վրա ցանք չի կատարվում։ Գարունը բացվելուն պես, հողի քեշի ժամանակ, ցրտահերկերի վրա նախացանքային մշակություն կատարեցինք։ Հարթեցրինք ու փոցխեցինք ցանվելիք տարածությունները, նրանց վրայից լրիվ հավաքեցինք աշնանից մնացած ցողունները, ինչպես նաև վերացրինք կոշտե-



րը։ Մի քանի տարի է ինչ մենք հողի կրկնավար չենք կատարում, քանի որ դրանից հողը փոշիանում է ու ավելի շուտ չորանում։ Կրկնավարին լրիվ փոխարինում են նախացանքային մշակության աշխատանքները, որոնց մասին համառոտակի ասացինք։

Երբ հողում կար բավականաչափ ջերմություն, մոտավորապես ապրիլի 20-ից, սկսեցինք բամբակի ցանքը և ավարտեցինք 3—4 օրում։ Նախքան ցանքը, բամբակի սերմը փոշեպատել էինք հեքսաքլորի 12 տոկոսանոց փոշիով, որը պաշտպանում է սերմերի ծիլերը վնասատուներից։ Յուրաքանչյուր բրիգադիր ու օղակավար, մեխանիզատորի հետ համահավասար, հետևում էր, որ ցանքը կատարվի որակով, հավասար խորությամբ և ուղիղ շարքերով։ Ամբողջ տարածության վրա ցանքը կատարել ենք նեղշար եղանակով։ Մենք շատ գոհ ենք կոլտնտեսության մեխանիզատորներ Մ. Մկրտչյանից և մյուսներից, որոնք, հատկապես այս տարի, և՛ ցանքը, և՛ նրան հաջորդող մշակությունները կատարեցին սեղմ ժամկետում ու բարձր որակով։

Այդ նույն մեխանիզատորները սերտորեն համագործակցելով կոլտնտեսականների հետ, կազմակերպված սկսեցին մշակությու-

նը։ Երբ երևացին բամբակենու ուղիղ շարքերը, սկսեցինք առաջին փխրեցումը մեքենայով ու ձեռքով և դրանից մի քանի օր հետո նաև նոսրացումը։ Մենք կատարեցինք միայն մեկ նոսրացում, բայց այնպես, որ ամբողջ տարածության վրա ապահովվի միջբուսային տարածությունը։ Մեզ մոտ միջբուսային տարածությունը հասցվեց 20—25 սմ., հեկտարում ապահովվեց 90—100 հազար բույս։

Ընթացիկ տարում բամբակի պլանտացիաներում կատարել ենք 4 կուլտիվացիա ու 6 փխրեցում, և դա միանգամայն բավական եղավ մոլախոտերից զերծ ու փուխր դաշտեր ունենալու համար։ Բոլոր դեպքերում մենք հաշվի առանք բույսի պահանջը։ Լուրջ ուշադրություն դարձրինք բույսերի սնուցմանը։ Առաջին սնուցումը կատարեցինք ավելի վաղ ժամկետում՝ հունիսի 10-ից, որի շնորհիվ մատղաշ բույսերը սկսեցին ավելի փարթամ աճել։ Յուրաքանչյուր հեկտարին տվեցինք 200—250 կիլոգրամ ամիակային սելիտրա և 4—5 տոննա քայքայված գոմաղբ։ Պարարտանյութերը հողի մեջ մտցրինք իրար հետ խառնված վիճակով՝ ՍՈՒՉ—տիպի մեքենայով։ Դրանից մոտ 30 օր հետո կազմակերպված ձևով



սկսեցինք նաև երկրորդ սնուցումը։ Ժամանակին կատարեցինք նաև երրորդ սնուցումը՝ այս անգամ ամիակային սելիտրայով ու սուպերֆոսֆատով։ Բոլոր սնուցումները կատարել ենք երկկողմանի՝ ոչ ավելի, քան 10—15 սմ. խորությամբ, այնպես, որ պարարտանյութերը լրիվ ու հավասարապես հասնեն մինչև բույսերի արմատները։

Բամբակենու բույսերի ծերատումը չափազանց կարևոր, նշանակություն ունեցող աշխատանք է։ Ուստի և մենք դրան առանձնակի ուշադրություն ենք դարձնում։ Խոր ծերատված բույսերը չափից դուրս չեն հոռանում, նրանք ավելի առատ բերքով են ծանրաբեռնվում։ Ընթացիկ տարվա օգոստոս ամսի առաջին կեսում կատարել ենք բամբակենու առաջին ծերատումը։ Հաջորդ, բայց խոր ծերատումը կատարել ենք բերքի հասունացման շրջանում, սեպտեմբեր ամսի առաջին օրերին, որը նպաստեց բերքի արագ հասունացմանը։

Այս տարի անհամեմատ ավելի լավ կազմակերպեցինք վնասատուների ու հիվանդությունների դեմ մղվող պայքարը։ Նախ կիրառեցինք պայքարի պրոֆիլակտիկ բոլոր միջոցառումները, իսկ երբ երևացին վնասատուները և հիվանդությունները, առանց

ուշացնելու սկսեցինք քիմիական սրսկումները՝ օգտագործելով ծծմբի ու պոլիսուլֆիդի խառնուրդ, որի շնորհիվ բամբակենին ամբողջ տարին կատարելապես զերծ մնաց ինչպես վնասատուներից, այնպես էլ հիվանդություններից։ Մեր կատարած լավ աշխատանքը լավ էլ արդյունք տվեց։ Փրկվեց աճեցրած առատ բերքը։

Սեպտեմբերի առաջին տասնօրյակում սկսեցինք բերքահավաքը։ Մենք չսպասեցինք, որ բոլոր կնգուղները հավասարապես բացվեն, բերքի հավաքումը սկսեցինք այն ժամանակ, երբ բույսերի վրա երևացին թեկուզ 1—2 բացված կնգուղներ։ Հենց դա էլ մեզ հնարավորություն տվեց, ինչպես միշտ, այնպես էլ այս տարի, գրավել շրջանում առաջավոր տեղերից մեկը, թույլ չտալով, որ բացված բամբակի հավաքումը ձգձգվի։ Բերքահավաքի դուրս եկանք կազմ ու պատրաստ։ Յուրաքանչյուր չանաքավոր ապահովված էր երկու գոգնոցով, ինչպես նաև բարդանով։ Յուրաքանչյուր չանաքավոր ինքն էր տեսակավորում հավաքած բամբակը։ Մրցություն էր ծավալված ոչ միայն շատ, այլև որակով բամբակ հավաքելու համար։

Մեր կոլտնտեսությունը հոկտեմբերի 20-



ին՝ երկրորդը շրջանում, կատարեց բամբակի հումքի հանձնման կոնտրակտացիոն պլանը։ Մենք ամբողջ ցանքատարածության ամեն մի հեկտարից դեռ հոկտեմբեր ամսին հավաքել էինք 24 ցենտներ առաջին տեսակի բամբակ։ Բայց մենք դրանով չենք կարող բավարարվել։ Չէ՞ որ մենք պարտավորվել ենք հեկտարի միջին բերքատվությունը ոչ թե 24, այլ 45 ցենտների հասցնել։

Մենք էլ, հետևելով առաջավոր կոլտնտեսությունների օրինակին, մտանք ՍՄԿԿ XXI և ՀԿԿ XX համագումարների պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ և պարտավորվեցինք մինչև նոյեմբերի 7-ը՝ մեծ տոնի օրը, կատարել նաև մեր մյուս՝ հեկտարից 45 ցենտներ բամբակ ստանալու պարտավորությունը։ Մեր խոսքը գործից չտարբերվեց։ Բամբակենու ամեն մի հեկտարից ստացանք 45 ցենտներ բերք։

Այդ մրցության առջևից ընթացավ անվանի օղակավարուհի Արծվիկ Հարությունյանը, որը բոլոր ուժերը նվիրեց յուրաքանչյուր հեկտարից 50 ցենտներ բամբակ ստանալու նպատակին։ Օղակը յուրաքանչյուր օր տարեկան պլանի 3—8 տոկոսի չափով

բամբակ էր հավաքում։ Օղակի առաջավոր բամբակագործներ Ն. Գասպարյանը, Ն. Ղազարյանը, Վ. Գալստյանը միշտ էլ իրենց օրվա առաջադրանքները 180—200 տոկոսով էին կատարում։ Հարությունյանից ետ չէին մնում բամբակագործական մյուս օղակավարները։

Մեր կոլտնտեսության բամբակագործների կեսից ավելին օրական 100-ից մինչև 150 կիլոգրամ բամբակ էին հավաքում։

— Մենք չթողեցինք, որ մեր ձեռքերով աճեցրած բամբակից թեկուզ մեկ փաթիլ մնար դաշտում, հավաքեցինք բացված վերջին կնգուղը և դրանով իսկ պատվով կատարեցինք մեր խոստումը, արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորեցինք մեծ տոնը,— ասում էին բամբակագործները։

---



## Ի ՊԱՏԻՎ ՊԱՐՏԻԱՅԻ XXI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ

(Թվեր և փաստեր)

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները ուժ ու եռանդ չեն խնայում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունից հաղթանակով դուրս գալու համար։ Ամեն օր գործարաններից, ֆաբրիկաններից, կոլտնտեսություններից ու սովխոզներից ուրախալի լուրեր են ստացվում աշխատանքային նոր հաջողությունների մասին։ Ահա թվեր և փաստեր։

✪ Հոկտեմբերի 24-ին մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունն ամբողջությամբ վերցրած ժամկետից շուտ կատարեց համախառն արտադրանքի արտադրության 10-ամսյա պլանը։ Անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ համախառն արտադրանքի թողարկումն ավելացել

է 12 տոկոսով, իսկ աշխատանքի արտադրողականությունն աճել է 5 տոկոսով։

✪ Երևանի արդյունաբերական ձեռնարկությունները պատվով կատարեցին մրցության ստանձնած պարտավորությունները։ Հոկտեմբերի 19-ին նրանք կատարեցին այս տարվա 10 ամսվա պլանները։ Մինչև տարվա վերջը Երևանի արդյունաբերությունը պլանից դուրս երկրին կտա 140 միլիոն ռուբլու արտադրանք։

✪ Երևանի Մուլիտ-ապակու տարայի գործարանի կոլեկտիվը 10 ամսվա արտադրական պլանը կատարել է ժամկետից մեկ ամիս շուտ։ Աշխատանքի արտադրողականությունը 9 ամսում բարձրացել է 11,1 և արտադրանքի ինքնարժեքն իջել է 15,2 տոկոսով։ Թողարկված արտադրանքի մոտ 92 տոկոսը առաջին տեսակի է։

✪ Երևանի կաշվե-գալանտերեայի ֆաբրիկայի կարի ցեխի կոլեկտիվը տարեկան պլանը կատարել է ժամկետից 2 ամիս 20 օր շուտ։ Ցեխի կոլեկտիվը խոսք է տվել մինչև տարվա վերջը երկրին տալ մեկուկես միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։

✪ Մեր ռեսպուբլիկայի արհեստակցական կոոպերացիայի արդյունաբերական



ձեռնարկությունները այս տարվա 10 ամսվա պլանները կատարեցին ժամկետից 19 օր շուտ։ Արհեստագործական կոոպերացիայի աշխատողները պարտավորվել են լրացուցիչ կարգով երկրին տալ 15 միլիոն ռուբլու արտադրանք։

✪ Երևանի ռետինատեխնիկական իրերի գործարանը այս տարվա արտադրական պլանը կատարեց հոկտեմբերի 28-ին։ Գործարանի կոլեկտիվը մինչև տարվա վերջը երկրին կտա մի քանի միլիոն ռուբլու լրացուցիչ արտադրանք։

✪ Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի սիստեմում գտնվող ավելի քան 30 արդյունաբերական ձեռնարկություններ դեռևս հոկտեմբեր ամսին կատարել և գերակատարել էին տարեկան արտադրական պլանները։

✪ Հոկտեմբերյանի շրջանի կոնսերվի գործարանի կոլեկտիվը հոկտեմբերի 5-ին կատարել է տարեկան պլանը, և պարտավորվել են մինչև տարվա վերջը լրացուցիչ կերպով երկրին տալ 3 միլիոն տուփ պահածո։

✪ Տարեկան պլանը ժամկետից շուտ կատարելով, Լենինականի քարհանքերի միության աշխատողները խոստացել են մինչև տարվա վերջը երկրին տալ 3 միլիոն ռուբ-

լու շինանյութ, Անի-պեմզայի աշխատողները՝ մեկուկես միլիոն ռուբլու շինանյութ, Անի-Տուֆի աշխատողները՝ մեկ միլիոն 700 հազար ռուբլու շինանյութ և այլն։

✪ Սոցիալիստական մրցությունից հաղթանակով դուրս եկավ Երևանի Շահումյանի շրջանի Տեղարդկոմբինատի կոլեկտիվը, որը դեռևս հոկտեմբերի 23-ին կատարեց տարեկան պլանը։ Կոմբինատում օգուտների պլանը կատարվել է 165 տոկոսով. կոլեկտիվը պարտավորվել է մինչև տարվա վերջը երկրին տալ 2 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։

✪ Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի կոլեկտիվը համախառն արտադրանքի 10 ամսվա պլանը կատարել է ժամկետից 15 օր շուտ, պղնձարջասպինը՝ հոկտեմբերի 16-ին, սև և ռաֆինացված պղինձինը՝ հոկտեմբերի 17-ին։ Մինչև այժմ թողարկված պղնձարջասպի 84 տոկոսը, նախատեսված 70-ի դիմաց, եղել է բարձր տեսակի։ Գերակատարված են նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման պլանները։

✪ Կիրովական քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները այս տարվա 10 ամսվա պլանները կատարել են ժամկետից



14 օր շուտ և պլանից դուրս երկրին տվել են մոտ 12 միլիոն ռուբլու արտադրանք։ Միայն Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 3,8 տոկոսով։

✪ Լենինականի տեքստիլ կոմբինատում կոմերիտական-երիտասարդական բրիգադները դեռ անցյալ ամսում պլանից դուրս թողարկել են ավելի քան 30 տոննա մանվածք, իսկ գործվածքային ֆաբրիկայի բրիգադները՝ 350 հազար մետր կտոր։

✪ Պարտիայի XXI համագումարը աչքի ընկնող հաջողություններով են դիմավորում նաև գյուղատնտեսության աշխատողները։

Մեր ռեսպուբլիկայի անասնաբուծության աշխատողները ժամկետից շուտ կատարեցին պետությանը բուրդ հանձնելու պլանը։ Պետությանը հանձնված է 3.302 տոննա բուրդ, 74 տոննայով ավել, քան հանձնվել է անցյալ տարվա նույն ժամանակաշրջանում։

✪ Ռեսպուբլիկայում առաջինը էջմիածնի շրջանը կատարեց բամբակի հումքի հանձնման տարեկան առաջադրանքը։ Կոլտնտեսականները պայքարում են պլանից դուրս երկրին տալ 1.500 տոննա բամբակ։

✪ Շահումյանի շրջանի կոլտնտեսու-

թյունները ժամկետից շուտ կատարեցին պետությանը խաղող վաճառելու տարեկան պլանը։

✪ Միսիանի, Աշտարակի, Ստեփանավանի և Ղափանի շրջանները ժամկետից շուտ են կատարել պետությանը միս վաճառելու առաջադրանքը։

✪ Շահումյանի շրջանի Գետափ գյուղի կոլտնտեսությունը հոկտեմբերի 21-ին կատարեց պետությանը բամբակ հանձնելու տարեկան պլանը։

✪ Ամասիայի, Արթիկի, Միսիանի և էջմիածնի շրջանների կոլտնտեսություններում. այս տարի, նախորդ տարվա համեմատությամբ, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 1000-ից մինչև 1500 գլխով։

✪ Եղեգնաձորի և Մեղրու շրջանների կոլտնտեսություններում ոչխարների գլխաքանակն ավելացել է 5—6 հազար գլխով։

✪ Արտաշատի, Արթիկի, Ախտայի, Ախուրյանի , Հոկտեմբերյանի և էջմիածնի կոլտնտեսություններում այս տարի, անցյալ տարվա համեմատությամբ, խոզերի գլխաքանակն ավելացել է 800—1000 գլխով։

✪ Խոշոր հաջողությունների են հասել



նաև ռեսպուբլիկայի անասնաբուծական սովխոզները։ Լոռու, Մարտունու, Ախտայի կաթնաանասնաբուծական սովխոզներում նախորդ տարիների համեմատությամբ մեծ չափերով ավելացել է կովերի կաթնատվությունը։

✪ Հոկտեմբերյանի շրջանի Նալբանդյան գյուղի կոլտնտեսությունն այժմ ունի 24 տրակտոր, մեկ հացահատիկային կոմբայն, 8 կուլտիվատոր, բամբակի 6 շարքացան, 6 փոշոտիչ-սրսկիչ, 8 սնուցող մեքենա, մեկ եգիպտացորենի սիլոսահավաք կոմբայն ու շատ գյուղատնտեսական գործիքներ, 500 հազար ռուբլու արժողությամբ։

✪ Սոցմրցության շնորհիվ Ախուրյանի շրջանի ճակնդեղագործները լուրջ հաջողությունների են հասել։ Արևիկ գյուղի կոլտնտեսությունը պետությանն է վաճառել 35 հազար ցենտներ ճակնդեղ, նախատեսված 33 հազար 350 ցենտների փոխարեն, իսկ Ախուրիկ գյուղի ճակնդեղագործները հումքի հանձնման պլանները կատարել են 130 տոկոսով։

✪ Մեղրու շրջանի կոլտնտեսությունները նախատեսված 460 ցենտների փոխարեն արդյունաբերական վերամշակման են հանձնել 504 ցենտներ բոժոժի հումք։

Միայն Մեղրի գյուղի կոլտնտեսությունը խնամել է 203 տուփ գրենա և ստացել 18.600 կիլոգրամ հումք։ Շերամապահության հետագա զարգացման նպատակով շրջանի կոլտնտեսությունները տնկել են 150 հազար հատ թթենի և գցել 5 հեկտար տարածությամբ թթենու մասսիվ։

✪ Էջմիածնի կոլտնտեսությունն այս տարվա ինն ամսում ամեն մի կովից ստացել է 2.300 կիլոգրամ կաթ։ Առանձին կթվորուհիներ յուրաքանչյուր կովից ստացել են 2.600 կիլոգրամ կաթ։

✪ Իջևանի շրջանի կոլտնտեսություններում վերջին մի քանի տարվա ընթացքում գցվել է 170 հեկտար խաղողի այգի, որի մի մասն արդեն դարձել է բերքատու։ Շրջանի կոլտնտեսությունները նախատեսել են մինչև 1965 թվականը խաղողի այգիների տարածությունը հասցնել 550 հեկտարի։

---

## СОДЕРЖАНИЕ




Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ